ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ
(ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 3 1956

ՎԱՐԱԳ ԱՌԱՔԵԼՅԱՆ

# ԵՂԻՇԵ. ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ
## (Ե. Տեր-Մինասյանի թարգմանության առթիվ)

*Եղիշեն «Հայ պատմագիրների մատենաշարի» երկրորդ գիրքն է աշխարհաբար թարգմանությամբ. գիրքը լույս է տեսել Հայպետհրատի հրատարակությամբ և, ըստ թարգմանչի հաղորդման, միայն աշխարհաբար, հինգերորդ թարգմանությունն է, չհաշված Կ. Կոստանյանի «Հյուսվածք հայոց հին պատմագիրների խոսքերից» (Տփխիս, 1894 թ.) աշխատության՝ Եղիշեի ընդարձակ կտորների թարգմանությունը, և դարձյալ՝ չհաշված մեր Ձեռագրատանը պահված № 5920 ձեռագիրը արևմտահայ աշխարհաբարով, որը բավականին հաջող թարգմանություն է, բայց առանց թարգմանչի անվան հիշատակության ու թվականի։*

*Ի՞նչն է պատճառը այսքան բուռն հետաքրքրության, որ ուղղված է դեպի Եղիշեի այս փոքրիկ մատյանը։ Անշուշտ առաջին հերթին բովանդակությունը, երկի ոգին, էությունը, որը համապատասխանում էր հայ ժողովրդի ազատատենչ գաղափարին։ Եղիշեի գիրքը ժողովրդին ներշնչել է բոցավառ սեր դեպի Հայրենիքը, դեպի իր ազատությունն ու անկախությունը։ Հայ ժողովուրդը կարդալով այս գիրքը ատելությամբ է լցվել զավթիչների ու բռնակալների նկատմամբ, որոնք հանդգնել են դիպչել նրա Հայրենիքի ու ազատության շահերին, և վերջապես սրանով ոգևորված ժողովուրդը անձնուրաց կռվում զարկել է թշնամուն, որտեղ որ այդ թշնամին հանդես է եկել նրա հարազատ Հայրենիքի սահմաններում։*

*Ինչպես տեսնում ենք, գրքի բովանդակությունը միանգամայն աշխարհիկ է։ Ձևով էլ Եղիշեի գիրքը տարբերվում է իր ժամանակաշրջանի մյուս գրվածքներից։ Սա սովորական առումով պատմություն չէ, այլ մի ամբողջ ժողովրդի պատմական ճակատագիրը վճռող պատերազմի ու այդ պատերազմում քաջաբար զոհվող հերոսների սխրագործությունների գեղարվեստական, ոգեշունչ նկարագրություն։ Հեղինակը ապրել է յուր նյութով. նա չոր ու ցամաք չի պատմագրել, ինչպես ուրիշ պատմագիրները։ Նա ոգևորվել է և միաժամանակ կամեցել է իր գիրքը ոգևորիչ դարձնել սերունդների համար։ Նա ստեղծել է դրական տիպեր և սրտով ու գաղափարով կապվել է այդ տիպերի հետ իր մտքի ու զգացման բոլոր թելերով. ատել է իր նկարագրած բացասական տիպերին և կարողացել է այդ ատելությունը մեծ ուժով ներարկել իր ընթերցողների մեջ։ Եղիշեն նպատակ է դրել իր ընթերցողներին ներշնչել ազատատենչ ոգի, քաջություն, անձնուրացություն։ Հենց այս է ոգևորել ժողովրդին և լարված հետաքրքրություն առաջ բերել Եղիշեի գրքի շուրջ։*

Եղիշեի գրքի ժողովրդականության երկրորդ պատճառը լեզուն է։ Նրա ոճը հագցված է բացարձակ կանոնավորություն. այստեղ վերացված են կողմնակի գերբայական լրացումները, որոնք այլ երկերում դառնում են բացարձակ անհասկանալի՝ շնորհիվ անհարազատ խնդրառության ու շարադասության։ Չկան երկրորդական նախադասությունների ավելորդ խճողումներ. խոսքի կապակցությունների ընթացքը պարզ է ու որոշ. նախադասության գլխավոր անդամները գտնվում են ուշադրության կենտրոնում՝ իրենց շուրջ ունենալով իրենց լրացումները։ Այս պարզության և բնականության հետ զուգընթաց է կանոնավոր և հաստատուն շարադասությունը։ Երբեմն ժողովրդական խոսվածքին մոտ կանգնած, շատ կարճ, նախադասությունները հաջորդում են իրար յուրահատուկ կշռույթով, որոշակի չափով ու հանգով, որ չափածո խոսքի տպավորություն է առաջացնում։ «Անյագական ձայնիւ հանապազորդեալ էր ի պաշտաման և անհատ աղօթիւք միշտ ընդ Աստուծոյ ի բարձունս խօսէր։ Աղ եղև նա անհամելոց և խթան ընդոստուցիչ ամենայն հեղգացելոց։ Դարմանեաց նովաւ ագահութիւն, և կարի յոյժ ամաչեաց նովաւ շուայտութիւն որկրամոլութեան։ Առողջութիւն եղև նա աշխարհիս Հայոց, և բազում վիրաւորք ի ծածուկ նովաւ գտին առողջութիւն» (Ութերորդ եղանակ, Վենետիկ, 1859, էջ 149)։

Ահա մի ուրիշ օրինակ նշանավոր «Տիկնայք փափկասունք» հատվածից. «Կործանեցան բարձրագահք տաճարաց նոցա, և խանգարեցան ագարք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, և տապալեալ աւերեցան ամուք ապաստանի նոցա. չորացան աղաղեցան բուրաստանք ծաղկոցաց նոցա, և տաշտախիլ եղեն որթք գինեբեր այգեաց նոցա»։

Ոչ միայն այսպիսի բանաստեղծական կտորների մեջ, այլև սովորական պատմողական հատվածներում էլ Եղիշեն խույս է տալիս լեզվական բարդ ճարտասանական հնարքներից՝ ամենից հասկանալի մնալու աստիճանի։ Այսպես է ոչ միայն ընդհանրապես շարադասության մեջ, այլև խնդրառության և բառերի ընտրության մեջ։ Այդպես էլ սովորական բառերի ընտրությունը կապված է նրա պարզ շարադասության հետ, որը գրական լեզուն ավելի է մոտեցնում բանավոր խոսվածքին։ Հինգերորդ դարի կանոնիկացված ենթարկված հոլովումից և խոնարհումից առանձնացող ձևաբանական նոր երևույթների ազատ կիրառությունը նրա լեզուն էլ ավելի է մոտեցնում բանավոր խոսվածքին, ուստի և հեռացնում է ճարտասանական ոճից։ Ծինականի խոսքաշինությամբ հարուստ, դիպուկ ու ալացիկ կապակցությունները, իմաստալից աֆորիզմները, համեմատությունները ու հակադրությունները նրա ոճը դարձնում են կենդանի, հյութեղ՝ բացառելով բանդրրասության ճիգ ու ջանքը։ Նրա ոճը միանգամայն ինքնուրույն է. այս իմաստով նրան շատերն են աշակերտել։ Եղիշեի թողած խոսքերը մեր հին լեզվի մեջ մրցակից չունեն։ «Լաւ է կոյր աչօք, քան կոյր մտօք». «Զուգութիւն է մայր բարեաց, անզուգութիւն ծնող չարեաց». «Մահ ոչ իմացեալ՝ մահ է, մահ իմացեալ՝ անմահութիւն է». «Որ գիտէ զմահ, ոչ երկնչի ի մահուանէ». «Զիք յանիրաւութենէ արդարութիւն, ի ստութենէ՝ ճշմարտութիւն». «Արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն հզօրագոյն կռուին» և այլն։

Պատմողական խոսքը օժտելով բազմաթիվ աֆորիզմներով՝ Եղիշեն իր ոճը դարձնում է իմաստալից, հատու և միաժամանակ սեղմ ու կենդանի.

*դրա համար նրա դարձվածքները հեշտությամբ հիշվել են և դարձել թևավոր խոսքեր ու ժողովրդականացել:*

*Եղիշեի համեմատությունները, էպիտետները կրում են ժողովրդական լեզվի ու ոճի հիպերբոլիկ բնույթը. դրանք առավել աշխուժացնում են պատմելաձևը՝ դարձնելով այն թեթև, ռոմանտիկ. դրանով հեղինակը փարատում է նյութի ընդհանուր մռայլ տոնը: Ինչպես որ Եղիշեի հերոսները թեթև ու զվարթ կրում են իրենց խոշտանգումներն ու պատիժները, այնպես էլ նա անմռայլ է պատմում մռայլ երևույթները, բայց բոլոր դեպքերում էլ զգում ենք, որ պատմիչը բանաստեղծ է և ապրում է պատմությամբ, իր նյութի շարադրությամբ:*

*Եղիշեի աշխարհաբար թարգմանությունները ոչ միայն հնացած են իրենց լեզվով, այլև ունեն բազմաթիվ սխալներ, մութ անմեկնելի կտորներ, որոնք միանգամայն աղճատում են Եղիշեի երկի ոգին ու էությունը:*

* * *

*Աշխարհաբար թարգմանությունների մեջ ամենավաղ ժամանակի թարգմանությունը Մարտիրոս Սիմոնյանինն է՝* «Եղիշէ վարդապետի պատմութիւնը Վարդանի և հայոց պատերազմի համար», *Մոսկվա, 1863: Ինչպես հրատարակությունից թվականից երևում է, թարգմանվել է մեր նոր գրական լեզվի սկզբնական շրջանում. բնական է, այդ ժամանակի աշխարհաբարը չէր կարող արտահայտել Եղիշեի կլասիկ լեզուն՝ հարուստ շքեղ դարձվածքներով, իմաստալից սեղմ աֆորիզմներով: Այդ պատճառով էլ Մարտիրոս Սիմոնյանի թարգմանության մեջ նկատվում են աշխարհաբարի թոթովանքներ, դեռ չենք խոսում սխալների մասին: Այսպես՝* Առաջի տեսանելով զզօրագլուխն յաղթութեան, որ ոչ ումեք ոտնհար լիցի *(տպագիր՝ լինի) (Վենետիկ, 1859, էջ 6), Սիմոնյանը թարգմանել է.* Աչքի առաջև ունենալով հաղթության զորագլխին, որ ոչ ոքի ոտի տակ չէ զարկում թշնամությամբ: Ահա ակամա և արտասվալից աչքերով գրում ենք այն շատ կտորվածքը, որ մենք ինքներս պատահեցինք ..

*Ավելորդ է ցույց տալ թարգմանիչի սխալները, դրանք ինքնին պարզ են: Ահա մի ուրիշ նախադասություն, որ բոլորովին անմիտ է: Եղիշեի բնագրում՝ ուղղված Դավիթ երեցին, կա՝* ...Առ ի՞նչ արդեօք հրամայեսցես, քան եթէ հրամայի՛ցիս լաւագունեացն: *Թարգմանության 16 էջում կարդում ենք.* Ինչի՞ համար ես արդյոք հրամայում, կամ գուցե քեզ հրամայում են ավելի լավերը: *Մի ուրիշ թարգմանիչ (Հ. Ղուկասյանց)՝ թարգմանում է.* Ինչ պատվեր է արդյոք, որ տալիս ես ինձ կատարելու. անշուշտ լավագույն պատվեր: *Ավելի հեռու է նաև երրորդ թարգմանիչը, որի թարգմանությունը ենթադրության արդյունք է և կապ չունի բնագրի հետ, ուստի չենք բերում: Դժբախտաբար այդ հատվածը ենթադրությամբ է թարգմանված նաև ներկա նոր թարգմանության մեջ:*

*Մենք կարծում ենք, որ այդտեղ Եղիշեի նախադասությունը աղավաղված է: Մեր Մատենադարանի № 1888 ձեռագիրը այդ տողերը ունի հետևյալ ընթերցվածքով:* Այլ դու, ով մեծդ ի գիտութեան Աստուծոյ, առ ի՞նչ արդեօք հրամայիցես լաւագունիցն: *Որտեղ ենթադրության ոչ մի տեղ չի մնում. պետք է թարգմանել այսպես.* Հապա էլ ավելի լավերին ինչի՞ վերաբերյալ (գրել) կհրամայես: *Մի ուրիշ օրինակ ևս Մ. Սիմոնյանի թարգ-*

մանությունից. բնագրի Ոչ ի կարծ ընդոստուցեալ, և ոչ ի լուր զարթուցեալ. Եղիշեն կամենում է ասել, որ ինքը հանկարծ վեր չի թռել և ոչ էլ լսելով զարթնել. սակայն թարգմանված է՝ Ոչ ինչպես կարծիքավոր և ուրիշից լսած բաներ (տես բնագիր, էջ 14[1], թարգմանությունը՝ 30)։ Համարյա այդպես է նաև Ղուկասյանի թարգմանությունը։ Կպատմեմ ոչ թե կարծիքով, կամ ուրիշից լսած լինելով (էջ 24)։ Նոր թարգմանության մեջ բերածս նախադասության առաջին մասը նույնպես սխալ է. Ոչ կարծիքներ լսելով (էջ 109)։ Սիմոնյանը չհասկացած նախադասությունները բաց է թողել. օրինակ՝ բնագրի անձամբ անձին արարեալ, որ նշանակում է՝ ինքնասպանություն գործել, Սիմոնյանը բաց է թողել, իսկ Ղուկասյանը այդ նույն նախադասությունը թարգմանել է. Երբ ինքն իրան գլխու թողնվեցավ։ Ներկա թարգմանությունը ուղիղ է։

Նոցա էր փորեալ զխորխորատն, զոր ընդէ՞ր լցէք յառաջագոյն (էջ 42)։ Սիմոնյանը թարգմանել է. Անդունդը նոցա համար էր բացվել, ինչի՞ դուք ինքներդ նոցանից յառաջ լցրիք (էջ 73)։ Նույնպես են թարգմանել նաև Ղուկասյանն ու Աղանյանը, որ անպայման աղավաղում է նախադասության իմաստը։ Տաշյանը առաջարկում է թարգմանել՝ ինչո՞ւ ընկաք նրանց փորած խորխորատի մեջ։ Իրոք ըստ տպագիր բնագրերի այդպես պետք է թարգմանել, որովհետև խորխորատ բառը գրված է հայցական հոլովով, որ նշանակում է, թե նոցա, ոչ թե շահի տրական է, այլ անցյալ դերբայի մոտ սեռականով ենթակա։ Սակայն համադասական նախադասությունների ամբողջ շարքը ցույց է տալիս, որ խորխորատ պետք է գրված լինի ուղղական հոլովով, որ և հաստատվում է ձեռագրով։

Զարմանալի սխալաշատ է մանավանդ Հ. Ղուկասյանի թարգմանությունը։ Շատ նախադասություններ բոլորովին կապ չունեն բնագրի հետ։ Այսպես օրինակ. Յոյնք իսկ՝ ոչ ելանեն ընդ քո իշխանութեանդ, թարգմանված է՝ Հույները չեն ազատվի քո իշխանությունից։

Ինչպես տեսնում ենք, ամբողջովին աղճատված է բնագիրը։ Առաջին նախադասությունը սկսած Սիմոնյանից վերջացած ներկա թարգմանությամբ սխալ է։ (Նոր թարգմանությունն է. Եվ մինչև անգամ հույները քո իշխանությունից դուրս չեն գա)։ Տպագրությունները դնում են. Ընդ քոյ իշխանութիւնդ (Վենետիկ), որից էլ առաջացել է սխալ թարգմանությունը։

Մեր Մատենադարանի երկու լավագույն ձեռագրերը №№ 1890, 1888 (առաջինը ամենահինը և երկաթագիր) ունեն՝ Ընդ քո իշխանութեանդ, այսինքն՝ իշխանութիւն բառը տրական հոլով է և ոչ հայցական, որ պետք է թարգմանել. Մինչև անգամ հույներն էլ չեն դուրս գա քո իշխանության դեմ։ Իսկ նախորդ թարգմանությունների իմաստը սխալ է ու երկդիմի. կամ պետք է հասկանալ՝ թե հույները գտնվում էին պարսից տիրապետության տակ, որ պատմական սխալ է, և կամ հույները կրկնեն քո տիրապետության տակ, որ անպայման մտքից է հանվում։

Բերենք մի ուրիշ օրինակ։ Երբ հայերը հարձակվում են պարսիկների վրա, մոգպետն յուր կողմնակիցներին ուղղում է հետևյալ խոսքերը։ Զի թէ էին զօրք աշխարհիս մոգք, ոչ ինչ խնայէին, սորա ի նոսա սաստկմամբ, ոչ

[1] Բնագրի էջերը ամենուրեք ցույց են տրված ըստ Վենետիկի 1859 թ. հրատարակության։

միայն զարտաքինս և այլ և յեղբարս և յորդիս և յամենայն մերձաւորս իւրեանց, նա և ոչ յանձինս իւրեանց: *Այս խոսքերը Հ. Ղուկասյանը թարգմանել է.* Եթե մեր աշխարհի զորքերն անգամ մոգեր դառնային, սոքա չէին խնայիլ նոցա էլ սատակցնելու...:

*Այսպես է նաև Գյուտ Ազանյանի թարգմանությունը: (Տես Ղուկասյան, էջ 77, և Ազանյան, էջ 76): Շատ հավանական է, որ հայ ազատամարտիկները պարսից զորքերին կջարդեին ամենայն սիրով նույնիսկ այն դեպքում, եթե նրանք մոգեր էլ չլինեին: Ուստի սխալ թարգմանություն է ու բնագրի հետ ոչ մի կապ չունի:* Աշխարհիս *բառը չի նշանակում* մեր աշխարհի *որպես թարգմանված է մոգպետի բերանով, այլ նշանակում Հայաստանի՝ այս աշխարհի, որտեղ գտնվում էր մոգպետը: Սխալը առաջացել է այն բանից, որ թարգմանիչները չեն հասկացել «ս» հոդի նշանակությունը: Նոր թարգմանությունը այս դեպքում ճիշտ է:*

Եւ զունդս զունդս դարձեալ գումարէին ի նոցանէ յերկիր հեռաւոր, յամուրս անապատին ի մարտ պատերազմի թշնամեացն արքային: *Այս նախադասությունը Ազանյանը թարգմանել է.* «Եվ դարձյալ գունդեր կազմեցին նրանցից հեռու երկրում՝ անապատի պինդ տեղերը...»:

*Մի քիչ ավելի բարվոք է Հ. Ղուկասյանի թարգմանությունը, բայց դարձյալ* գումարել *բայը ճիշտ չէ հասկացվել:* Գումարել *պարզապես նշանակում է՝* ուղարկել: *Օրինակ՝* Զգունդն առաջին տային ցՆերշապուհ Րմբոսյան և գումարէին զնա պահապան աշխարհին *(Եղիշե, II, էջ 56): Համեմատիր նաև՝* Եւ զայս արարեալ բազում այրուձի գումարէր ընդ նոսա *(№ 1888 ձեռագիրը ունի* զկնի նոցա *(էջ 39)):*

*Այստեղ գունդ կազմելու մասին խոսք չկա.* զունդս զունդս գումարէին, *պարզապես նշանակում է խումբ խումբ ուղարկում էին: Մենք կարծում ենք՝* գունդ *բառը չունի նույնիսկ ռազմական* գունդ *բառի նշանակությունը: Նոր թարգմանության մեջ ճիշտ չի հասկացված* գումարել *բայի նշանակությունը, թարգմանիչը չի կարողացել ավանդականի սահմաններից դուրս գալ և գրել է.* ...Նրանցից գնդեր կազմեցին և ուղարկեցին...

Ոռնանար եղեն նմա ամենայն սիրելիք նորա *(էջ 109) նախորդ բոլոր թարգմանիչները թարգմանել են ուղղակի նշանակությամբ, որ պետք է նշանակեր՝* Նրա բոլոր սիրելիները նրա համար ոռնացող եղան, *մինչդեռ* ոռնանար լինել *նշանակում է՝* արհամարհել, *հենց այստեղ այդ նշանակությամբ էլ գործ է ածված: Ոչ մի սիրելի չէր կարող նրան մոտենալ և ոռնահար անել: Նոր թարգմանությունը այդ դարձվածքը* անարգել *բայով է արտահայտել, որ կարծում ենք դարձյալ հեռու է:*

*Ինչպես տեսնում ենք, Եղիշեի հին թարգմանությունները ոչ միայն հնացած են, այլև մեծ մասամբ հեռու են բնագրից և աղավաղված: Նոր թարգմանության մեջ նախորդ թարգմանությունների բազմաթիվ կոպիտ սխալներ շտկված են. այս թարգմանությունը շատ բարձր է նախորդ բոլոր թարգմանություններից:*

*Չնայած այս ամենին, ներկա թարգմանությունը ևս զերծ չէ մի քանի վրիպումներից, որ մենք կկամենայինք առաջ բերել այստեղ: Այդ վրիպումները մեծ մասով հետևանք են այն բանի, որ ցայժմ չկա Եղիշեի բոլոր ձեռագրերի բաղդատական տպագրությունը, որով կարելի է մասամբ վերականգնել բնագիրը:*



Մենք մեր քննական դիտողությունները հիմնականում բաժանում ենք երկու կարգի։ Սկզբում ցանկանում ենք խոսել Եղիշեի բնագրական աղավաղումների, ապա նոր թարգմանության մի քանի թերությունների վերաբերյալ։

Սկսում ենք գլխակարգումների հարցից։ Մեր Մատենադարանի մի հին ձեռագիր (1207 թ.), որ ունի բազմաթիվ տարբերություններ մինչև այժմ հայտնի բոլոր տպագրություններից և ամենահին ձեռագրից (գրված 1172 թ.), ունի միայն յոթը գլուխ. յոթերորդ գլուխը սկսվում է հետևյալ խորագրով Արտաքոյ վեց եղանակին: Եւթներորդ, դարձեալ վասն նորին պատերազմի և չարչարանաց սուրբ քահանայիցն Ղեւոնդեանց: Այս ձեռագրի 5-րդ գլուխը համապատասխանում է Վենետիկի և Աճեմեանց կոչված օրինակի 5-րդ և 6-րդ գլուխներին։ Ուստի պետք է հաստատ ասել, որ «Վարդանանց պատմությունը», ըստ հեղինակի հայտարարության՝ յոթ գլխի է բաժանված եղել։ Ութերորդ գլուխը առաջացել է սխալմամբ՝ մի թիվ թռիչք կատարելով. իսկ այդ վրիպումը գտնում ենք մեր Մատենադարանի № 1890 Եղիշեի ամենահին ձեռագրում (1172 թ.)։ Այս ձեռագիրը 5-րդ գլուխ չունի, իսկ 6-րդ գլուխը համապատասխանում է մյուսների 5-րդ գլխին։ Եվ այս ոչ թե նրա համար որ հինգերորդ գլուխը հանված է ձեռագրից, ինչպես ենթադրվել է, այլ շատ հասարակ վրիպման արդյունք է, որի շնորհիվ էլ յոթ գլուխը դառել է ութ, մինչդեռ պատմիչը ասում է, որ ինքը յոթ գլուխներում է շարադրել յուր նյութը։

Այստեղ մենք չենք կամենում Եղիշեի վերաբերյալ այլ բանասիրական հարցեր ևս շոշափել, միայն նախքան թարգմանության բուն թերացումների մասին խոսելը, կուզեինք նշել մի շարք բնագրական աղավաղումներ, որոնք չէին առաջանա, եթե թարգմանիչ ընկ. Ե. Տեր-Մինասյանը ուշադրության առներ իր ձեռքի տակ գտնված, իրեն ծանոթ և մատչելի ձեռագրեր, այն ժամանակ արդեն թարգմանությունը մյուս թարգմանություններից գերազանց լինելով հանդերձ, կունենար ավելի մեծ գիտական արժեք, գուցե այլևս ապագայում պետք չլիներ Եղիշեի մի նոր թարգմանություն կատարել։ Այդ կարիքը կզգացվի համահավաք բնագրի հրատարակությունից հետո։

Այսպես, օրինակ՝ առաջին գլխի Եւ գտալով հող հանէր ընդ չորս կողմանս երկրի (էջ 7) թարգմանված է. Աղմկելով հող էր հանում երկրի չորս կողմերը։ Նախ, աղմկելով հող չի բարձրանա, երկրորդ՝ գրաբարի գտալ բայը մռնչել և կռվել է նշանակում, իսկ աղմուկը շատ թույլ է։ Պետք է հող բառը դարձնել հողմ, որ զարմանալի կերպով հիշում է «Նոր Հայկազյանը», որ և այդպես է նաև մեր № 1888 ձեռագրում (ձեռագիրը հիշատակելիս միշտ ի նկատի ունենալ այս համարը)։ Ուստի այդ նախադասությունը պետք է թարգմանել. Կռվելով փոթորիկ էր բարձրացնում աշխարհի (և ոչ երկրի) չորս կողմերը։ Նույն էջում. Եւ իբրև եւես անօրէն իշխանն երէ յաջողեցաւ չարութիւն նորա՝ պետք է լինի՝ ոչ յաջողեցաւ, որովհետև Հազկերտը հարձակվում է հոռոմների վրա՝ Թեոդոսի դեմ կռվելու համար։ Իսկ Թեոդոսը կանխում է, ուստի չի հաջողվում նրա մտադրությունը. այդպես է ձեռագրում։ Նույն էջում պետք է՝ Անարեկ արար զամենայն զօրս, ազդել՝ Անարէկ արար զամենայն արս, որովհետև նրա դեմ զորք չի դուրս եկել։

Զանձինս մխիթարէին և զընկերսն քաջալերէին և աշկարա զպաշտօնն ունէին և բազմացուցանէին *բնագրի դիմաց, ձեռագիրը տալիս է միանգամայն տարբեր ընթերցվածք:*

Զանձինս մխիթարէին և զընկերս քաջալերէին և իբրև աշտարակ լուսոյ զպաշտօնն առնէին ի բազմացուցանել. *այսպիսով* աշկարա *բառը դուրս է ընկնում Եղիշեի բնագրից և գրաբարից, որ առաջացել է* աշտարակ *բառի սխալ ընթերցումով կամ գրափոխությամբ.* իսկ պաշտօնը *բազմացնելը պետք է հասկանալ՝* որքան չարչարանքները բազմացնում էին: *Չմոռանանք ասել նաև, որ մեր Մատենադարանի Եղիշեի՝ ամենահին ձեռագիրը (№ 1890) նույնպես ունի* աշտարակ՝ աշկարա *բառի դիմաց:*

*Մի ուրիշ նախադասություն ևս.* Նաև բնաւ իսկ ամենևին զինչ և ասասցես յերկրաւորացն, կամ ի վեհից կամ ի վատթարաց, բնաւ ուրեք եկեղեցի ի նոցանէ ոչ գտցի *(էջ 36). Թարգմանությունն է.* Այլև ինչ էլ որ ասելու լինեիս երկրավորներից, վեհ բաներից, թե վատթարներից, ոչ մի տեղ նրանցից ամենևին եկեղեցի չի դուրս գա: *Հիմնական սխալը առաջացրել է* ասել *բայը, որի խնդիրը, եթե այդ բայը իրոք հարկավոր է այստեղ, պատմական բացառականով պետք է լիներ, բայց գրված է բուն բացառականով. և հետո դրա հետևանքով էլ առաջացել են մյուս սխալները.* վեհ բաներից, *թե* վատթարներից, *իսկ շարունակության մեջ թարգմանությունը լրիվ անիմաստ է: Վերևում Եղիշեն գրում է, որ եկեղեցին մարդու գործ չէ, թագավորի պարգև չէ և ոչ էլ արվեստագետի գործ* (ճարտարութիւն, *այստեղ կոնկրետ նշանակություն ունի և նշանակում է արվեստագետ, վարպետ) և այլն: Իսկ այդ ամբողջի ամփոփումն է վերոբերյալ քննելի հատվածը: Այդ հատվածում* ասասցես *բայաձևը պետք է փոխել* իցեն *բայաձևով, որ տալիս է ձեռագիրը և ապա թարգմանել այսպես՝* ինչ էլ որ լինի երկրավորներից, *(այսինքն ով էլ որ լինի) լինի բարձրերից, թե ստորներից, ոչ մի տեղ նրանցից եկեղեցի չի գտնվի (չի ստեղծվի):*

*Բերենք մի ուրիշ օրինակ.* Ուստերք և դստերք ազատաց և շինականաց կրթեսցին ի հրապարակս նոցուն մոգաց: Ի հրապարակս *պետք է փոխել* ի հրահանգս *և թարգմանել՝* մոգերի հրահանգներով *և ոչ* մոգերի հավաքատեղիներում, *ինչպես թարգմանված է (բնագիր՝ էջ 40, թարգմ.՝ 137): Տեղն է այստեղ հիշել նաև Միհրներսեհի (ձեռագրում Միհրներսեհ վզրուկ) նամակի վերջին բառը...* Յանդիման լերուք մեծի հրապարակին *(էջ 22), որ թարգմանվում է՝* մեծ ատյանին: Մեծի հրապարակին *պայման ձևը պետք է ուղղել* մեծի հազարապետին: Գրեաց և յանձն արար մեծ ասպարապետին, *ուղղել՝* հազարապետին *(էջ 152) (ձեռագրում գրված է «Թապետին»):* Դիւարար արեգական կաքաւիցէք *(էջ 42), ուղղել՝* ...արեգական երկիր պագանէք *(նույն տեղում):* Արդ ուսուցանիցէք զպատիր խաբէութիւն մոգաց՝ *ուղղել.* Արդ ուսանիցիք զպատիր խաբէութիւնս մոգաց *(էջ 41):* Զինչ առնիցէք զաստուածաստ հրամանն *(ձեռագրում՝* ...զաստուածասաց հրամանն*) նախադասության մեջ* հրաման-*ը պետք է թարգմանել՝* պատգամ *կամ* խոսք: Յայտնել և ցուցանել նոցա զխորհուրդն ոչ կամէին, *ուղղել՝* ...ոչ կարէին, *եթե չէին կամենում, լսելը դժվար չէր լինի:* Եւ յամենայն տեղիս՝ յապատս և յանապատս միայնանոցս շինէին, *ուղղել՝* Եւ յամենայն տեղիս անապատս, մենանոցս շինէին: Ապատ *բառը միայն այստեղ է գործածված, որ ինչպես տեսնում ենք, հաստատում*

է, իսկ Հ. Դրասխանակերտցու մոտ այդ բառը բառախաղի տպավորություն է գործում։ Ինչ վերաբերում է անապատ բառին, ապա այն կրոնական նշանակություն ունի։

...Եղեն բնակիչք խորշակարեր դաշտաց։ Որ զօրէն ազատ էրէոյ շրջէին... նախադասության դիմաց ձեռագիրը տալիս է մի նոր ընթերցված. ...Եղեն բնակիչք խորշակահար դաշտաց, որ զօրէն նախարարացն ազատայրոյ շըրջէին...։ Եթե վերջին բառերի դիմաց տպագրի ընթերցվածքը այնուամենայնիվ հարմար է, մանավանդ որ ազատայր գեղեցիկ բառը չկա մեր բառարաններում, ապա խորշակարեր ածականը դաշտաց ձևի համար անիմաստ է, ուստի պետք է ընդունել՝ խորշակահար։ Մենք չենք կասկածում նաև մյուս սրբագրության վրա։

Ոչ գոյր նոցա համեմ խմնամորք անուշարար առանձինն, և ոչ հացաբարք որոշեալ ի պէտս սպասու ըստ ազատաց կարգի (էջ 156)։ Այս անորոշության դիմաց ձեռագրում ունենք մի բոլորովին պարզ և հասկանալի ընթերցված։ Ոչ գոյր նոցա փոնարար անուշուրեան խորտկաց, և ոչ հացաբարք որոշեալ ի պէտս պասուց ըստ ազատաց կարգի։

Մի այլ նախադասություն ևս, որ թարգմանությամբ սխալ իմաստ է ստացել։ Ոչ կոչեցան պատուականք յարանց ի տանարս նոցա (էջ 156) թարգմանված է. պատվական մարդիկ չկանչվեցին նրանց խնճույքի սեղանի։ Ձեռագիրը տալիս է հետևյալ ընթերցվածքը. Ոչ կոչեցան ի պատուական արանց ի տանարն նոցա. այսինքն՝ ոչ թե պատվարժանները չեն կանչվում նրանց խնճույքին, այլ կանայք չեն հրավիրվում նրանց խնճույքներին։

Քանզի մարգ է աշխարհս, պետք է՝ ուղղել՝ Քանզի ի մեր ձեռին է աշխարհս (էջ 47)։ Ողորական բանիւք, ուղղել ողորկ բանիւք (էջ 57)։ Զայս գրեաց և եցոյց մարզպանին, որում անունն էր Սերուխտ, ձեռագրում աղավաղված է. կարծում ենք պետք է ուղղել՝ Զայս գրեաց և եցոյց մարզպանն Սերուխտայ...

Այդպես էլ պետք է կեղծ բառ համարել գրուան՝ բառը յորժամ գրուան եղեն նորա յիրս արքունի նախադասության մեջ (տես էջ 143) և ուղղել այսպես՝ Յորժամ գրուանեղ են նորա յիրս արքունի։ Գրուանեղ նոր բառի մեջ գրա պետք է նշանակի՝ հավատարմություն, դաշնադրություն, խոստում։

Սրանցով, ի հարկե, չեն վերջանում Եղիշեի բնագրական սրբագրությունները. դրանք հասնում են հարյուրների, որոնց կատարումից հետո, նոր հնարավոր է Եղիշեի լեզվի ճիշտ ուսումնասիրությունը կատարել։ Մեր ձեռագիրը ոչ միայն տալիս է վերոբերյալ տիպի տարբերությունները, այլև հոլովական, խոնարհման, շաղկապների և ավելորդ բառերի գործածության, մանավանդ շարադասության ու բառաձևերի, որոնք հաճախ բոլորովին լեզվական ու ոճական այլ պատկեր են առաջ բերում, քան մեզ ցայժմ ծանոթ Եղիշեի բնագիրը։

Այժմ անցնում ենք թարգմանության քննությանը։

Եղիշեի ընծայականի առաջին նախադասության բան բառը թարգմանված է գործ բառով, ուրիշները թողնում են նույն բան բառը։ Մալխասյանը առաջարկել է այդ բառը թարգմանել՝ շարադրություն, պատմություն, գըրվածք. կարծում ենք այդպես էլ պետք է հասկանալ։ Իսկ ինչ վերաբերում է նույն նախադասության մեջ գործածված առաքինացան բային, ապա բա-

ջոր թարգմանիչներն էլ թողնում են այդ բառը նույնությամբ, որ ներկա ընթերցողի համար անորոշ է և անհասկանալի. մեր կարծիքով այդ բառը պետք է թարգմանել ճերուացան հասկանալի բառով, որ ճիշտ արտահայտում է գրաբարյան բառի նշանակությունը։

Նույն ընծայականի Յայսմ յեօթն գլուխս կարգադրեալ և եդեալ ծայրածիր պարապմամբ զսկիզբն և զմիջոցն և զկատարածն նախադասությունը թարգմանված է. Այս յոթը գլուխների մեջ կարգով գրեցի և ճոծ ու լի բովանդակությամբ գրի սկիզբը, միջոցն ու ավարտը։ Կարգադրել բառը պետք է թարգմանել՝ շարադրել բառով։ Պարապմամբ ձևը որոշ ձեռագրեր տալիս են պատարմամբ ձևով, ըստ երևույթին թարգմանիչը (ճիշտ կերպով) հաշվի է առել վերջին ձևը, բայց նախադասության բուն իմաստը լրիվ չի բացահայտվել, մանավանդ ճոծ բառը այստեղ անտեղի է։ Պետք էր թարգմանել. Այս յոթը գլուխներում մանրամասն լրիվությամբ շարադրեցի (կարգադրեալ և եդեալ միևնույն նշանակությունն ունեն) սկիզբը, միջինը և վերջը։ Միջոց բառը չպետք է թողնել, որովհետև աշխարհաբարը չի արտահայտում այն, ինչ Եղիշեն է կամենում ասել։ Նույն տեղում Նահատակութիւն բառը թարգմանված է զինվորութիւն, իսկ նրանից վերև ...Որ ոչ ումեք ռամկանար լինի (Ձեռ. լիցի) թշնամութեամբ այլ ամենեցուն (տպագր.՝ անդ) ուսուցանէ զիւր անպարտելի զօրութիւնն ամբողջ նախադասությունը սխալ է թարգմանված։ Ռամկանար լինել, ինչպես վերևում բացատրել ենք, նշանակում է՝ արհամարհել, ծաղրել, իսկ այստեղ թարգմանված է չուռ տված ձևով։ Ռամկանար լինել պահանջում է տրական հոլովով անձի խնդիր. ինչպես՝ մի ռամկանար լինիր ինձ, թշնամի իմ, զի գլորեցայ (Միքիա, Է, 8). Մի որ ռամկանար լիցի այրւոյս. և այլն։ Ուստի վերևի նախադասությունը պետք է թարգմանել, որը ոչ ոքին չի ծաղրում (կամ արհամարհում) թշնամությամբ և ոչ՝ որը ոչ ոքից թշնամությամբ ռամկանար չի լինի։ Այս դարձվածքը սակայն 109 էջում ուղիղ է թարգմանված։ Իսկ հաջորդ նախադասությունը. Եւ անա ո որ կամեցի՝ ընդունի իբրև զնահատակ առաքինի՝ թարգմանված է. Եվ նա որ կամենում է, առաքինի զինվոր է ընդունում։ Քերականորեն բոլորովին այդպես չպետք է հասկանալ. այլ բան է, եթե լիներ զօրք, բայց ոչ տպագրություններում և ոչ էլ ձեռագրերում նման ընթերցվածք չկա։ Եթե պետք է այնպես թարգմանել, որ զորագլուխը անպայման ընդունողը լինի, ապա այդ նախադասության ուղիղ թարգմանությունն է՝ Եվ նա ով որ կամենա, կընդունվի որպես քաջ զինվոր։ Հաջորդ նախադասության թարգմանությունը նույնպես պետք է ուղղել։ Եւ քանզի բազմադիմի է նահատակութեանց անուն թարգմանված է. Եվ որովհետև զինվորությունը բազմապիսի կոչում ունի։ Մալխասյանը առաջարկել է (Մուրճ, 1892 թ., № 1) անուն բառը թարգմանել գործ և բառ այժմ էլ նահատակութիւն պետք է թարգմանել՝ քաջություն։ Մեզ թվում է անուն նահատակութեան կամ նահատակութեան անուն պետք է թարգմանել՝ նահատակություն բառը։

Գրաբար այս դարձվածքի մեջ անուն նշանակում է բառ. ինչպես մենք հիմա ասում ենք գիտություն բառը, պետություն բառը. գրաբար էլ ասվում է. անուն պետութեան, անուն գիտութեան և այլն։ Համեմատիր. Բայց թէպէտ և ասին ինչ անուանք ի գրոց յուշկապարկից կամ համբարուաց կամ պարկաց։ Անուանք առանց անձանց են յուշկապարկաց և իշացլուց (տես Եզնիկ. Լ, ԻԴ), որ թարգմանվում է. Բայց թէպէտ Աստվածաշնչի կողմից

*հիշատակվում են* նուշկապարիկ, համբարու, իշացուլ *բառերը.* Նուշկապարիկ և իշացուլ բառերը առանց անձնավորման են: *Իսկ Եղիշեի նախադասությունը պետք է հասկանալ.* Քանի որ բազմազան է *(այսինքն բազմաթիվ նշանակություն ունի, բազմաբովանդակ է)* նահատակություն բառը...:

*Վերոհիշյալ նախադասության շարունակությունը կազմող* Զոր և մեծ իսկ քան զամենայն սէր սուրբ յանձնեաց մտաց գիտեմք *նախադասությունը համարձակվում ենք թարգմանել.* Որը հենց մեծ ենք ճանաչում, քան անձնեաց սրտի *(միտք—սիրտ)* ամեն սեր *և ոչ՝* Այս անձնեաց սրտի սուրբ սերն ամեն բանից մեծ ենք ճանաչում, *ինչպես թարգմանված է, ինչպես և առաջարկում է Ս. Հարությունյանը «Հովիտում»:* Սէր *բառը չի կարող բուն ուղիղ խնդիրը լինել, քանի որ* զամենայն *բառը պոկելով նրանից՝ այն դարձնում ենք անորոշ, իսկ* զոր *բառը այստեղ չի նշանակում* այն, *այլ* զոր *ուղիղ խնդիր է* գիտեմք *բայի համար, իսկ՝* քան զամենայն սէր *բաղդատության պարագա է (էջ 10):* Խաղացին գնացին յիւրաքանչիւր աշխարհաց լրջմտութեամբ... *թարգմանված է՝* Յուրաքանչյուր երկրից միամտությամբ եկան *գնացին: Նախ* իւրաքանչիւր *նշանակում է՝* յուրաքանչյուրը յուր, *իսկ թարգմանությունը անորոշ է.* լրջմտութիւն *չի նշանակում* միամտություն, *այլ՝* ուրախություն: *Մեր բերած նախադասության մեջ* լրջմտութեամբ *ձևից հետո կա* անտրտում խնդութեամբ, *որ ձեռագիրը չունի, որ չի ճանաչում նաև «Հայկազեան բառարանը»: Թվում է թե այդ հետագա գրիչների բացատրությունն է, եթե չենք ընդունում, որ այդ սովորական համանիշ հավելագրություն է: Եթե* լրջմտութիւն *նշանակում է՝ միամտություն, որ չգիտեմ ինչպես է հասկանում հարգելի թարգմանիչը (գրաբարյան՝* հավատարիմ, *թե մեր* նաիվ), *ապա ինչպես թարգմանենք շատ օրինակներից միայն մեկը՝ Խորենացու.* Մեծաւ լրջմտութեամբ հրամայէ առաջի առնել նմա զարքունի դիւանն: *(Խորենացի,* I, *Ը): Հիշենք սակայն որ,* իւրաքանչիւր *բառը մեծ մասամբ ճիշտ է թարգմանված: Համեմատիր բնագրի էջեր 15, 27, իսկ որոշ տեղեր էլ անտեղի կերպով* իր, իրենց *առնված են փակագծում:*

*Տեղին է այստեղ հիշատակել նաև մի ուրիշ հանգամանք, որ դժբախտաբար թարգմանիչը հաշվի չի առել. բնագրական պատվածները իրենց անհրաժեշտ ծանոթագրությունը չեն ստացել, որպեսզի շահագրգռեն ուսումնասիրողներին: Այսպես օրինակ՝ էջ 29-ում.* Եւ եթէ առ մարդիկ այս պաշտի ի ձեռն թագաւորական վիճակին խրատու խնամ տանել իւրում իշխանութեանն *նախադասության մեջ* պաշտի *բայը անիմաստ է, պետք է ուղղել՝* պատշաճի *և ապա թարգմանել: Ոչ թե՝* մարդկանց մէջ այս է կատարվում, *այլ՝* մարդկանց այս է պատշաճում *(էջ 26):* Զի հայեցեալ մարդիկ ի յանդիմանութիւն ապականացու տարերացս, *թարգմանված է.* Որպեսզի մարդիկ տեսնելով այս ապականացու տարրերի անկայունությունը: *Նախ ասենք, որ ամենուրեք* ապականութիւն, ապական, ապականացու *բառերը թողել են անթարգմանելի. դրանք միշտ պետք է թարգմանել՝ փչացող, ոչնչացող, փչացում և այլն:* Յանդիմանութիւն *բառը այստեղ չի նշանակում՝* անկայութիւն, *այլ նշանակում է՝* հակառակություն, *որովհետև մի քիչ վերև Եղիշեն ասում է՝* նյութերը միմյանց հակառակ են *(տես նույն էջը). դրա համար էլ առաջարկում ենք* Զի եթէ միաբանէին տարերքս՝ *կարդալ՝* Զի եթէ միաբան էին *և թարգմանել՝* երբ այս տարրերը հաշտ *(ոչ հակառակ միմյանց)*

չինէին. *որովհետև եթե թարգմանենք այնպես, ինչպես թարգմանված է, այն ժամանակ վերևի խոսքը, որտեղ Եղիշեն ասում է, թե սրանց արարիչը* ածէ ի սիրելութիւն հաւանութեան *(տպագիր. հաւանութեամբ), այսինքն միաբանում է, հակասություն կառաջանա, որովհետև նրանք իրար միաբանվում են։*

*Էջ 92.* ...Որ ի վերայ նոցա նստէր ի բարձր դիտանոցին իբրև յամուր քաղաքի. *Թարգմանված է՝* Որը նրանց վրա նստած էր *(ինչպես)* բարձր դիտանոցում, ինչպես ամուր քաղաքում: Ինչպես *առնված է փակագծում հաջորդ կրկնությունից խուսափելու համար։ Դա ոչ թե նշանակում է՝ ինչպես դիտանոցում, այլ իրոք նստած էր դիտանոցում, որ իրենց մեջքի վրա կրում էին փղերը։ Իսկ հաջորդ մասը, որ թարգմանված է՝* ինչպես ամուր քաղաքում, *պետք է թարգմանել՝* ինչպես քաղաքի ամրոցում: Ամուր *բառը Եղիշեի մոտ համարյա միշտ ամրոց է նշանակում, որի համար օրինակներ պետք չկա էլ, քանի որ համեմատությունն իմաստից արդեն պարզ է։*

*Վերցնենք մի ուրիշ նախադասություն (էջ 151).* Զի թէպէտ և փոխեցաւ նա ի գործոյ հազարապետութեանն արքունի, վասն զի *(տպագրություններում՝ և)* ի բազում իրս գտաւ վնասակար, ինքն իսկ յանձն իւր կրէր զաւեր աշխարհին Հայոց, վասն որոյ և մեծաւ անարգանօք յուղարկեցաւ ի տուն իւր, սակայն զկապելոցն ոչ երբեք չարախօս կամէր լինել...: *Որպեսզի պարզ լինի այս մեջ բերված երկար նախադասությունը, հանենք մեզ հետաքրքրող վերջին մասի երկրորդական նախադասությունը.* Ինքն իսկ յանձն իւր կրէր զաւեր աշխարհին Հայոց, սակայն զկապելոցն ոչ երբեք չարախօս կամէր լինել..., *(ձեռագրում՝* վասն սորոցն ոչ կամեցաւ չարախօս լինել): Յանձն իւր կրէր զաւեր աշխարհին Հայոց *թարգմանված է. «Ինքն հենց իրեն էր համարում հայոց աշխարհի ավերման պատճառը»։ Նախ՝* կրել *չի նշանակում՝* համարել. *մենք կթարգմանեինք՝* մշակել, հրահանգել. *երկրորդ՝* յանձն *հայցական հոլովով չէ, որ համարենք ուղիղ խնդիր, այլ ուղիղ խնդիրը* աւեր *բառն է. և այստեղ* պատճառ *չկա։ Պետք է թարգմանել՝* ինքն իր մեջ մշակում, կամ ինքն էր հրահանգում հայոց երկրի *(ոչ աշխարհի)* կործանումը:

*Էջ 106—107.* Իբրև կրկնեցին և երեքկնեցին ցուցանելով ի ներքս յարքունիսն, հատաւ վճիռ մահու ի վերայ նորա. *Թարգմանված է.* Երբ երկու-երեք անգամ կրկնեցին՝ հասկացնելով թագավորին ներսում, մահվան վճիռ արվեց նրան. հասկացնելով թագավորին *մասը միանգամայն իմաստազուրկ է և ոչ մի բանի հետ չի կապվում։ Բացի այդ, այստեղ թագավորի մասին խոսք չկա։* Ի ներքս յարքունիսն *կապված է* հատաւ *բայի հետ և պետք չկա ստորակետով անջատել, միայն* մնում *է* ցուցանել *բայը, որը այստեղ բոլորովին ավելորդ է, անիմաստ ու խնդրառությամբ ոչ մի բանի հետ չի կապվում (ձեռագիրը չունի այդ բառը)։*

*Էջ 144.* Եւ քարշել... *և այնչափ սաստիկ* քարշեցին: Քարշել *թողնված է նույնությամբ ու անհասկանալի է. բայց հաջորդ 145 էջում պարզվում է.* քարշել *նշանակում է* քաշ տալ. *մինչդեռ* քարշել *այստեղ նշանակում է* ծեծել, գանահարել: *Համեմատիր Դատաւորք, Ը, 7 և 16.* Եւ ես քարշեցից զմարմինս ձեր փշովք անապատի: Քարշել *բայը մեր բերած նշանակությամբ գործ է ածել նաև Բուզանդը, որ «Հայկազյան բառարանը» չի բերում։* Վասն որոյ անցէն ի ներքս քարշէին զնա յեկեղեցւոջն. Ի ներքս քարշէին *Բուզանդի թարգմանիչ հանգուցյալ ակադեմիկոս Ս. Մալխասյանցը թարգմանել է*

ներս են քաշում, *բայց Հուսիկը եկեղեցու ներսում է, երբ Տիրանը գալիս է ներս մտնելու, նա արգելում է Տիրանին՝ ասելով* Մի գար ի ներքս. *նշանակում է Հուսիկը ներսում է. իսկ նրանք դրսից են գալիս, էլ ուր էին նրան ներս քաշում։ Եվ հետո դրանով նախադասությունը վերջանում է, և այս պատմիչը հաղորդում է.* Բրածեծ եղեալ ջախջախեալ... կոշկոճեալ ընկեցեալ լինէր *(Բուզ., III, ԺԲ, էջ 32)։*

Քաշել *բայը այսօրվա բարբառներում ուղղակի նշանակում է* ծեծել *(տես Աճառյան «Գավառական բառարան»). մեր գյուղի (Կոտայք, Եղվարդ) խոսվածքում* քաշել *նաև այդ իմաստը ունի, բայց հատկապես շատ է գործածվում զույգ հոմանիշների ձևով.* քաշեց ածեց. էրեխուն քաշէ ջարթ ու փուռթ ա արե։ *Ղարաբաղի բարբառով՝* մի լավ քաշըմ ըմ։

*Էջ 87.* Ի ժամ ճակատուցն յանձնեալ ձեզ ի նոցանէ աղօթիւք, *թարգմանված է.* Բայց ճակատամարտի ժամանակ ձեզ հանձնելով նրանց աղոթքին։ *Քերականորեն այս թարգմանությունը բոլորովին չի համընկնում բնագրին։ Նախ* յանձնեալ ձեզ *կապակցության մեջ* ձեզ *չի կարող ուղիղ խնդիր լինել և չէ. երկրորդ՝* աղօթիւք *չի նշանակի* աղոթքին։ *Այստեղ կամ* անձնեալ *պետք է նշանակի* բաժանվելով *կամ բայը պետք ունի սրբագրվելու։ Մենք կարծում ենք, որ* յանձնել *նշանակում է* բաժանվել *և կթարգմանեինք.* Դուք բաժանվելով նրանցից աղոթքներով, *որովհետև շարունակության մեջ անմիջապես հետևում է* յամուր տեղւոջ ուրեք բողոքիք զնոսա։

Վատցնել *թարգմանված է՝* ոչնչացնել, *այստեղ (Թարգմ. էջ 115) պետք է թարգմանել՝ ցաք ու ցրիվ անել, որովհետև սրան հաջորդում է* զի առ յոյժ աղքատութեանն ակամայ զիմեսցեն յօրէնս մոգութեան. *եթե ոչնչանան, այլևս մոգության կրոնը չեն կարող ընդունել։*

Կարծել *(բնագիր՝ էջ 26), նշանակում է՝* համարել, ընդունել։ Զգենուլ *(զգենուլ զիւր ասեղծուած մարմինս) թարգմանված է* առնել *բայով, որը սակայն չի բացահայտում նախադասության միտքը. դարձվածքը մնում է անորոշ։ Պետք էր թարգմանել ուղղակի՝* հագնել, վրան կրել *բայով։*

Այլ զու յայսր ամենայնի *(էջ 31), թարգմանված է* այս ամենի մասին։ *Սա մի աղավաղված նախադասություն է. պետք է լինի.* յետ այսր ամենայնի. Ի *(Յ)նախդիրը սեռականով չի գործածվում։*

Շնչել *(շնչեաց չարախօսութիւն, էջ 32), թողնվել է նույնությամբ.* շնչել *այստեղ նշանակում է՝* փչել, *որովհետև հաջորդում է* և բորբոքեաց զբազմաց իւր զհուր անշիջանելի։

Յոյժ զեղջ է մտաց իմոց, *թարգմանված է.* Եվ ինձ համար մեծ խղճահարություն է. *այս դարձվածքը նշանակում է՝* վախենում եմ։ *Շարունակության մեջ կարդում ենք.* բէ զուցէ աստուածքն բարկացեալ վասն ձեր ի մէնջ վրէժս առնուցուն *(տես բնագիր, էջ 35, թարգմ. 132)։* Կանացեաց *բառը թարգմանված է՝* կանացի, *թվում է, թե պետք է թարգմանել՝* թուլասիրտների, *այսինքն՝ կանացի տղամարդկանց (տես էջ 92)։* Քանզի որչափ ագեղս առնես զմեզ երկրաւորաւս, գեղեցկագոյնս առնես զմեզ երկնաւորաւն *(էջ 145), թարգմանված է բառացի.* Որքան մեզ ագեղացնես երկրավորով, այնքան ավելի կգեղեցկացնես երկնավորով։ *Անհասկանալի է. կամ պետք էր թարգմանել՝* որպես երկրավորի, որպես երկնավորի, *կամ ավելի ճիշտ.* որքան մարմնով, այնքան հոգով։

Սոյն այրս այս ի նմին գիշերի եւթն հարիւր արամբք ել գնաց ի բերդէ.

անտի և ոչ կարացին ձեռն արկանել ի նա: *Նախ* Եւթն հարիւր արամբք–ի *դիմաց ձեռագիրն ունի* չորս արամբք, *որ ավելի հավանական է, որովհետև շրջապատված բերդից 7 հարյուրով չէին կարող դուրս գալ, և երկրորդ՝* ձեռն արկանել ի նա, *նշանակում է* բռնել նրան *և ոչ* ձեռք տալ, *ինչպես թարգմանված է (էջ 95, թարգմ. 194):*

*Էջ 51.* Ընկեցեալ կայր այնուհետև ոսկի, և ոչ ոք առնոյր իւր առանձինն արծաթ, և արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ պատուական հանդերձ առ ի զարդս մեծարանաց: *Կարծում ենք, այս նախադասությունը պետք է կետադրել և ուղղել այսպես.* Ընկեցեալ կայր այնուհետև ոսկի, և ոչ ոք առնոյր իւր առանձինն, արծաթ *արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ... և այլն: Ուստի թարգմանությունն էլ պետք է ուղղել այսպես: Բացի այս, նախադասության մեջ հիշված* առանձինն *բառը, որ թարգմանության մեջ թողել է նույնությամբ, գրաբարում միանգամայն այլ նշանակություն ունի:* Սեփական ոչ ոք առնոյր իւր առանձինն, *պետք էր թարգմանել.* Ոչ ոք իրեն չէր սեփականացնում: Առանձինն *բառը Եղիշեի մոտ համապատասխանում է հունարեն* ἴδιος[1] *բառին, որ շփոթվել է հիւլէ բառի հետ (տես Եղիշե, Վենետիկի հրատարակություն, էջեր 204—224):*

*Սրանց հետ արժե անել նաև մի քանի այլ մանր դիտողություններ ոչ այնքան որպես թերություն, որքան ի զգուշություն գրաբար բնագրերի հետագա թարգմանությունների համար:* Ինչ *բառը, որ ժխտական, պայմանական նախադասությունների մեջ թարմատար է, թարգմանված է* ամենեին *բառով (տես բնագիր՝ էջեր 47—44, թարգմ.՝ 142—145):* Կէս *բառը գրաբարում մեծ մասամբ նշանակում է* մի մասը: Տաճկաստան *այժմ այլ նշանակություն ունի. գրաբարին անտեղյակ մարդը կշփոթի Թյուրքիայի հետ (46, թարգմ. 145):* Կարասի *(էջեր՝ բնագ. 48, թարգմ. 146) այստեղ չի նշանակում* գույք, *այլ՝* դրամ *և այդ նշանակությամբ էլ օրինակ է բերել «Հայկազյանը»: Պարզ է՝ պարտից գույք չէին բերի:*

Հրամանս անագինս, *չի նշանակում* անագին հրամաններ, *այլ՝* սաստիկ, ահ ազդող հրամաններ *(50—148):* Պաշտօնեայ *ամենուրեք չի թարգմանված:* Պատուական *նշանակում է* թանկագին:

Անարգել տէրութիւն *անհաջող է թարգմանված՝* անխոչընդոտ տերություն, *ասենք նաև, որ ձեռագրում* անարգել *բառը չկա (էջեր 55—153): Նույն տեղում* Ասիացւոց կողմանց *թարգմանված է՝* ասիացիների երկրներին, *աշխարհագրական չէ:* Պատրաստ եմք ի սպանանել և ի մեռանել *արտահայտության մեջ՝* սպանանել *պետք է* սպանվել *հասկանալ և ոչ* սպանել: *Ի դեպ, ձեռագրում չկա* սպանանել *(էջեր 56, 154):*

*Եւ* կուտէին բազում արծաթ և ոսկի զզէնս և զարդս զարի արանց և զքաջ երիվարաց *պետք է ուղղել...* զարի արանց և զքաջ, և զերիվարաց *և ոչ* զքաջ երիվարաց *ինչպես հասկացված է:*

Եւ զխաբէութիւն ապստամբին Վասակայ, որպէս Հայոց բանիւ խաբեաց զթագաւորն, յանձն առնուլ զմոգութիւն *նախադասության* բանիւ խաբեաց զթագաւորն *մասը պետք է երկու կողմից առնել ստորակետների մեջ որպես բացահայտում* զխաբէութիւն *բառին, այս թողած մասը թարգմանել՝* որպես թե հայերը հանձն են առնում մոգությունը, *ինչպես գրաբարյան մի շատ*

[1] *Տես* H. Hübschmann, Armenische grammatik, *էջ 361,* ճիշդ *բառի տակ:*

*կանոնավոր* տրականը անորոշով *արտահայտություն (համեմատիր բնագիր՝ 62, թարգմ. 160)*: Նաև ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ ի Քրիստոս, *պետք է ուղղել* նաև սուրբ եկեղեցի..., *իսկ* ի Քրիստոս, *որ բնագրում մի անորոշ կապակցություն է, թարգմանության մեջ* մնացել *է նույնությամբ՝ էլ ավելի անորոշ: Կամ պետք էր թարգմանել* Քրիստոսի համար *կամ՝* Քրիստոսով *(էջ 35—132)*: Եւ էառ իշխանութիւն ի վերայ կենաց նոցա *(էջ 73—74)*: Կենաց *ունի* կյանքի *նշանակությունը և ոչ* ստացվածք, *որպես թարգմանված է: Նմանք առաջարկում են* զգաստանալ *բայը թարգմանել* խնայել *բայով (էջ 151), շատ հարմար է, բայց ձեռագրում գրա փոխարեն ունենք* զգացարուք:

Յայնժամ զխորհուրդն Աբրահամու ի մէջ առեալ. խորհուրդ *բառը միանգամայն ճիշտ թարգմանված է* օրինակ *բառով. համեմատիր* առակ խորհրդոյ Աբրահամեան պատարագին *(Նարեկ, ԽԴ), բայց* ի մէջ առեալ *անիմաստ է, պետք է ուղղել* ի միտ առեալ *և թարգմանել՝* հիշելով *և ոչ* մեջ բերելով: Յիւր մարմինն փրկեաց զբոլոր աշխարհս... *թարգմանված է* յուր մարմնի մեջ. *պետք է թարգմանել՝* յուր մարմնով: *Գրաբարում շատ սովորական է ներգոյականը գործիականի իմաստով: Այդպես է նաև չորրորդ գլխի առաջին էջի* Որ յոգի և մարմին դիակնեալ, *թարգմանված է՝* որի հոգին և մարմինը..., *այնինչ պետք է լինի,* որը հոգով և մարմնով դիակ է դառնում: Բազմական *նշանակում է՝* բարձ *և ոչ՝* տեղ *(տես թարգմ. էջ 163, և մեր հոդվածը «Փավստոս Բուզանդի աշխարհաբար թարգմանությունը», տպված Լեզվի ինստիտուտի «Աշխատությունների ժողովածուի» 3-րդ հատորում, 1948 թ., էջ 330)*: Հաւասար *բառը (էջ 69)* միաբանք և հաւասարք *կապակցության մեջ չի նշանակում* հավասար, *այլ հոմանիշ է* միաբան *բառին (համեմատիր Կորյուն, էջ 14, Թիֆլիս, 1913 թ.)*: *Այստեղ տեղն է հիշել մի շարք գրաբարյան նման զույգ հոմանիշների մասին ևս. դրանցից մեկը գրվում է սեռական հոլովով, իսկ մյուսը բառ խնդրառությամբ: Եղիշեն այդպիսի դարձվածքներ շատ է գործածում: Օրինակ՝* խորամանկութիւն խորհրդոյ, գութ սիրոյ, պատիւ պատուհասի, հրաման բանի, հոգ հնարից, ելս հնարից, պատրանս խաբէութեան, վիշտս նեղութեան, պատիւ դատապարտութեան, տագնապ խռովութեան, նախանձ բարկութեան, քաջութիւն արութեան, վախճան կատարածի: *Եվ կամ՝* կամաց ակնարկութեան. կամք կարծեաց, *նաև* նշանօք արուեստիւք: *Կան այնպիսիները, որոնք զույգ հոմանիշ բայեր են:* Կանգնել կալ, կալ մնալ *և այլն: Այսպիսի կապակցությունների դեպքում թարգմանիչը զգույշ պետք է վարվի, որովհետև, եթե երկու բառով է թարգմանում, մանավանդ այն պարագայում, երբ գրաբարյան այդ զույգ մենիմաստ բառերը աշխարհաբարում ստացել են բոլորովին տարբեր նշանակություններ, ապա բնագիրը փոխվում է: Օրինակ՝ բնագրի* ի նախանձ բարկութեան բրդեցան *պարզապես նշանակում է՝* զայրացան, բարկացան, *իսկ թարգմանության մեջ դուրս է եկել* բորբոքվեցին նախանձախնդրությամբ *(ավելորդ) ու* զայրույթով *(թարգմ. էջ 148)*: *Նույնպես բնագրի (էջ 41)* վիշտ նեղութեան *թարգմանված է՝* վիշտ ու նեղություն, *այնինչ պատմիչը միայն շեշտում է վիշտը, թախիծը: Մինչդեռ նեղություն այժմ կարող է այլ իմաստով հասկացվել: Եթե մի քանի տող կարդանք կպարզվի, որ նեղության մասին չի խոսվում: Հակառակ սրան ճիշտ են թարգմանված* նշանօք արուեստիւք. կամք կարծեաց. զառաջարկութեան զոր-

ծոյն: Բայց առաջին գլխի առաջին նախադասության հրաման պատուիրանի պետք էր միայն պատւէր բառով թարգմանել: Նման մի դարձվածք է նաև յաւելում բայով կազմվող նախադասությունը, որտեղ յաւելում կրկնություն է ցույց տալիս (տես մեր «Գրաբարի հատընտիր», էջ 31, ծան. 14): Օրինակ՝ Եղիշեի յաւել և պատմեաց (բնականն է՝ յաւել պատմել), կրկին պատմեց, և ոչ թե ավելացրեց պատմեց, ինչպես թարգմանված է:

Վերջացնելով մեր խոսքը թարգմանության մեր գտած վրիպումների մասին, ուզում ենք մի քանի տարբեր ընթերցումներ բերել մի քանի անունների վերաբերյալ, որ տալիս է մեր Մատենադարանի № 1888 ձեռագիրը: Այսպես օրինակ՝ Միհրներսեհ վզրուկ հրամանատար... (էջ 20), ձեռագիրը հրամանատար բառի դիմաց ունի ի հարամատայ և ապա հաջորդ 22 էջում հազարապետից արեաց և անարեաց կապակցության մեջ չկա անարեաց, իսկ ամենայն մեծի սպահից արեաց-ի դիմաց՝ ունենք ամենայն մեծամեծաց սեփհականաց (այսպես) արեաց: Եպիսկոպոսների անվանացանկում Քասու կամ Քասուն անվան դիմաց ունենք Քաջիւ, Եւղաղ կամ Եւղալի անվան դիմաց՝ Ղազար: Ռըմրուսեան՝ Ռուբեան, Յոսկերտ՝ Զողակերտ: Չորրորդ գլխում տրված իշխանների ցանկում, Ապահունեաց Մանէճ-ի դիմաց՝ Ամատունեաց Մանեճին: Նույն տեղում ավելացած մի Սահակ անուն-ից հետո նաև՝ սարկաւագ մի Մուշէ անուն: Բայց երկրորդ գլխի նախարարների ցանկում ունենք ի տոհմէն Ապահունեաց Մանէճ անուն, որ չի համընկնում մեր վերևում բերածին, բայց հենց այն թերթը, որ պարունակում է երկրորդ գլխում գտնվող նախարարների ցանկը, ձեռագրից ընկած է և նրա փոխարեն տարբեր թերթի վրա և տարբեր գրով ուրիշ թերթ է ավելացրած, որ անպայմանորեն արտագրություն է մեզ ծանոթ բնագրերից: Բնագրի 57 էջի (Վենետիկ, 1859 թ.) զիշխանն Ապահունեաց զօրօք իւրովքն ձեռագրում չկա, իսկ Տիրոց անվան դիմաց ունենք Տիրան: Հինգերորդ գլխի անունների ցանկի թերթը նույնպես ընկած է:

Այս փաստերը ցույց են տալիս, որ Եղիշեի գիրքը մեզ հասել է բազմաթիվ փոփոխություններով, աղճատումներով: Անկարելի էր, որ հիշյալ աղավաղումները չազդեին Եղիշեի նոր թարգմանության վրա, որի հետևանքով էլ, ինչպես տեսանք, կան մի շարք անճշտություններ, թյուրիմացություններ, որոնց վերացումը ամբողջովին հնարավոր կլինի Եղիշեի համահավաք բնագրի հրատարակությունից հետո: Արդյոք այս հանգամանքը չի ստիպում ասել, որ աշխարհաբար թարգմանելուց առաջ անհրաժեշտ է կազմել համահավաք բնագրեր, որոնցից և կատարել թարգմանություններ*:

---

* Ավելորդ չենք համարում նշել, որ Ե. Տեր-Մինասյանը Եղիշեի աշխարհաբար թարգմանությունը կատարել է Հայրենական պատերազմի տարիներին, երբ Մատենադարանի ձեռագրերը չէին տրվում օգտագործման: Բնականաբար այն ժամանակ թարգմանիչը զրկված էր բնագիրը ձեռագրերի հիման վրա սրբագրելու հնարավորությունից:

Այժմ հենց իր՝ Ե. Տեր-Մինասյանի պատրաստած՝ Եղիշեի պատմության գիտական-համեմատական բնագիրը հանձնված է տպագրության և շուտով լույս կտեսնի: (Ծանոթ. խմբագրության):